ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների և զեկուցումների համար

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձը . . . 1

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . . . 24

СОДЕРЖАНИЕ

Стр.

**Материалы для бесед и докладов**

47-ая годовщина Великой Октябрьской социалистической революции 1

**В помощь агитаторам**

Темы и литература для бесед агитаторов . . 24

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71. телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 20
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 47-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Շուտով մեր մեծ երկրի, ինչպես նաև եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորները, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը հանդիսավոր իրադրության մեջ տոնելու են փառապանծ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձը։*

*Տարիներ տարիների ետևից անցնում են, և երախտապարտ սերունդների հիշողության մեջ միշտ վառ է մնում, միշտ պայծառ 1917 թվականի մեծ Հոկտեմբերի այն երջանկահիշատակ օրը, երբ «Ավրորա» հածանավը իր թնդանոթային համազարկերով ի լուր աշխարհի ազդարարեց մարդկային պատմության մեջ նոր դարագլխի՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի ստեղծման մասին։*

*Ճեղքելով իմպերիալիզմի ճակատը Ռուսաստանում, մեծ Հոկտեմբերը տապալեց շահագործողների իշխանությունը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա։ Ազատագրված երկրում ստեղծվեց նոր տիպի պետություն, սովետական պետություն, նոր տիպի դեմոկրատիա՝ աշխատավորների համար դեմոկրատիա։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան համոզիչ կերպով ցույց տվեց ռևոլյուցիոն բանվոր դասակարգի անխորտակելի ուժն ու հզորությունը, որը դաշինքի մեջ էր մտել աշխատավոր գյուղացիության*

հետ։ Կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականության և կազմակերպական վիթխարի աշխատանքի շնորհիվ բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը փայլուն հաղթանակ տարան։ Կյանքը ցույց տվեց, որ առանց Վ. Ի. Լենինի կողմից ստեղծված ու դաստիարակված կոմունիստական պարտիայի, որը վայելում էր միլիոնավոր աշխատավորների սերն ու վստահությունը, բանվորներն ու գյուղացիները չէին կարող կործանել կապիտալիզմը, նվաճել ու պահպանել իրենց հարազատ սովետական իշխանությունը։

Սոցիալիստական ռևոլյուցիան մեր երկրում տեղի ունեցավ մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ դրոշի ներքո։ Նա վառ կերպով ցուցադրեց մարքսիստական-լենինյան թեորիայի ճշմարտացիությունը և նրա կենսունակության ուժը, լենինյան գաղափարների հզոր ուժը, որով զինված էին բանվոր դասակարգը, ամբողջ աշխատավորները։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ծնունդ սովետական իշխանությունը, օժտված լենինյան իմաստությամբ, փրկեց մեր երկիրը կործանումից՝ դուրս կորզելով նրան իմպերիալիստական արյունարբու պատերազմից և օտարերկրյա կապիտալի անարգ լծից։

Եթե մինչ այդ տեղի ունեցած ռևոլյուցիաները շահագործման մեկ ձևը փոխարինում էին մեկ ուրիշ ձևով, մեկ շահագործող դասակարգի իշխանությունը՝ մեկ ուրիշ շահագործող դասակարգի իշխանությամբ, ապա Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան ոչնչացրեց մարդը մարդու կողմից շահագործելու բոլոր տեսակներն ու հնարավորությունները ՍՍՌՄ-ում, ազգային ճնշման ու անհավասարության բոլոր ձևերը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծագույն նշանակությունը նաև այն է, որ նա բարձրացրեց կարիքի և աղքատության մեջ մոռացված ժողովրդական լայն մասսաներին ստեղծագործական աշխատանքի։ «Ռևոլյուցիաները,— գրում էր Վ. Ի. Լենինը,— ճնշվածների և շահագործվողների տոնն են։ Ժողովրդի մասսան երբեք ընդունակ չէ հասարակական նոր կարգերի այնպիսի ակտիվ ստեղծող հանդիսանալու, ինչպես ռևոլյուցիայի ժամանակ։ Այդպիսի ժամանակներում ժողովուրդը հրաշքների է ընդունակ...» (Երկեր, հ. 9, էջ 130)։







Հիրավի, մեր երկրի աշխատավորները հին կարգերի դեմ մղվող պայքարում հրաշքներ գործեցին։ Ընթանալով անծանոթ ուղիներով, հաղթահարելով դժվարությունները ու զրկանքները, ջախջախելով թշնամիների համառ դիմադրությունը, սովետական ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կենսագործեց Վ. Ի. Լենինի կողմից մշակված սոցիալիզմի կառուցման պլանը։

Այսպիսով, սոցիալիզմը, որի անխուսափելիության մասին գիտականորեն նախատեսել էին Մարքսն ու Էնգելսը, սոցիալիզմ, որի կառուցման պլանը ուրվագծված էր Վ. Ի. Լենինի կողմից, դարձավ ռեալ իրականություն։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի թեորիական ու պրակտիկ գործունեության, նրա անձնուրաց աշխատանքի շնորհիվ մարդկությունն ըստացավ ռեալ, գոյություն ունեցող սոցիալիստական հասարակարգ և սոցիալիզմ կառուցելու մասին փորձով ստուգված գիտություն։

Սովետների երկրի փառապանծ ուղին՝ սկսած ամբողջ աշխարհը ցնցող մեծ Հոկտեմբերի առաջին օրերից մինչև սովետական մարդու կողմից տիեզերքը նվաճելու այս օրերը, համոզիչ կերպով հաստատում է սոցիալիստական սիստեմի գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ։ Մեր երկիրը իր օրինակով ամբողջ աշխարհին ցույց է տալիս, թե ինչպիսի երջանկության կարող են հասնել աշխատավորները, եթե իրենք կառավարեն իրենց պետությունը, ինչպիսի բարիք կստանա ժողովուրդը, ձեռնամուխ լինելով խաղաղ ստեղծագործ աշխատանքի։

Անցած 47 տարիների ընթացքում ծաղկեց և բարգավաճեց Սովետական Միությունը, լայն ճանապարհ բացվեց երկրի արտադրողական ուժերի զարգացման համար։

Հարազատ կոմունիստական պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն, անշեղորեն առաջնորդվելով լենինյան այն ցուցումներով, որ ռևոլյուցիայի հաղթանակից հետո տնտեսական շինարարությունը, էկոնոմիկան կոմունիզմի համար մղվող պայքարի գլխավոր ասպարեզն են, հատուկ ուշադրություն են դարձնում արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդա-

կան տնտեսության մյուս ճյուղերի արագ զարգացման վրա։

Օգտագործելով ժամանակակից գիտության և տեխնիկայի նվաճումները, սրբությամբ կատարելով պարտիայի XXII համագումարի որոշումները, ՍՄԿՊ ծրագիրը, սովետական ժողովուրդը վիթխարի աշխատանք է կատարել քիմիական արդյունաբերության զարգացման բնագավառում։ 1963 թվականին մեր երկրում արտադրվել է 20 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։

Յոթնամյակի հինգ տարում երկրում քիմիական արդյունաբերության համար կատարվել է 5,3 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրում, որը գրեթե մեկ ու կես անգամ ավելի է, քան սովետական իշխանության բոլոր 40 տարիներին նույն նպատակով կատարված կապիտալ ներդրումները։

Յոթնամյակի կատարման հինգ տարվա արդյունքները ցույց տվեցին, որ փայլուն հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Նախատեսված էր հինգ տարում արդյունաբերական արտադրանքն ավելացնել 51 տոկոսով, իսկ փաստորեն այն աճել է 58 տոկոսով։

Մեր երկրի արդյունաբերության աշխատողները, պայքարելով մեծ Հոկտեմբերի տոնը արժանավայել դիմավորելու համար, գերակատարեցին 1964 թվականի երրորդ եռամսյակի և ինն ամսվա պլանը։ Ինն ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի աճը կազմեց ավելի քան 7 տոկոս։ Ընդսմին, քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացավ 15 տոկոսով, սև և գունավոր մետալուրգիայինը՝ 8, էլեկտրաէներգիայի արտադրությանը՝ 12, թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքը՝ 3 տոկոսով և այլն։

Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ այս տարվա ինն ամիսներին ավելի է արտադրվել հանքային պարարտանյութ՝ 4 միլիոն տոննա, ծծմբաթթու՝ 602 հազար տոննա, ավտոդող՝ 1,5 միլիոն հատ, չուգուն՝ 2,6 միլիոն տոննա, պողպատ՝ 3,5 միլիոն տոննա, գլանվածք՝ 3,1 միլիոն տոննա, նավթ՝ 13,4 միլիոն տոննա, գազ՝ 14,1 միլիարդ խորանարդ մետր, ածուխ՝ 16,5 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 32 միլիարդ կիլովատ-ժամ, քիմիական



սարքավորում՝ 39 միլիոն ռուբլու, ցեմենտ՝ 2,3 միլիոն տոննա, հավաքովի երկաթբետոն՝ 4 միլիոն խորանարդ մետր։

Ավելացել է նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը. բամբակե, բրդե, վուշե և մետաքսե գործվածք՝ 281 միլիոն քառ. մետր, կաշվե կոշիկ՝ 8,6 միլիոն զույգ, հեռուստացույց՝ 348 հազար հատ, լվացքի մեքենա՝ 430 հազար հատ, սառնարան 144 հազար հատ, կահույք՝ 86 միլիոն ռուբլու, շաքար և շաքարավազ՝ 852 հազար տոննա, անարատ կաթնամթերք՝ 393 հազար տոննա, պանիր՝ 24 հազար տոննա, յուղ՝ 15 հազար տոննա, ձեթ՝ 31 հազար տոննա, ձուկ և ձկնամթերք՝ 360 հազար տոննա, պահածո՝ 726 միլիոն տուփ։

Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն այս տարվա ինն ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 4 տոկոսով, գերակատարվել է արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը, ստացվել է ավելի քան 300 միլիոն ռուբլու արտապլանային տնտեսում։

1964 թվականի ինն ամսում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են մոտ երկու միլիոն գյուտ ու ռացիոնալիզատորական առաջարկ, որոնց արմատավորումից ստացված տնտեսումը տարեկան հաշվով կազմում է մոտավորապես 1,2 միլիարդ ռուբլի։

Ձեռք բերված հաջողությունները ցույց են տալիս, որ կապիտալիզմի երկրների և ամենից առաջ ԱՄՆ-ի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ Սովետական Միությունը կհաղթանակի։ Վերջին վեց տարում (1958 1963 թթ.) ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրանքի աճի տարեկան միջին տեմպը կազմել է 9,7 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 3,6 տոկոս։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրության աճը մեր երկրում եղել է 7,9, իսկ ԱՄՆ-ում՝ 1,8 տոկոս։ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը 1963 թվականին կազմում էր ԱՄՆ-ի արտադրանքի մոտ 65 տոկոսը։

Այս բոլորը ցույց են տալիս, որ մեր արդյունաբերությունն ավելի արագ է զարգանում, քան ԱՄՆ-ի արդյունաբերությունը։

Կատարելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումնե-

րը, պարտիայի ծրագիրը, մեր երկրի աշխատավորները խոշոր հաջողությունների են հասել նաև գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Զգալիորեն ավելացել է հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի, բանջարեղենի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրությունը։

Պարտիան անդադրում հոգ է տանում գյուղատնտեսության ինտենսիվացման համար, ուժեղացնում է կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական բազան։ 1963 թվականին երկրի գյուղատնտեսության մեջ աշխատում էին երկու միլիոն 600 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 533 հազար հացահատիկային կոմբայն, 52 հազար ճակնդեղահավաք կոմբայն, 900 հազար բեռնատար ավտոմեքենա, սպառվել է 17 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Աճել են կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ։ 1963 թվականին կապիտալ ներդրումները կազմեցին 5 միլիարդ 100 միլիոն ռուբլի։ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները կազմեցին 16 միլիարդ ռուբլի, իսկ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը՝ 29 միլիարդ 900 միլիոն ռուբլի։

Այժմ պարտիան անհետաձգելի խնդիր է համարում մոտակա տարիներին հացահատիկի արտադրությունն ավելացնել 5—7 միլիարդ փթով, 1970 թվականին հացահատիկի համախառն բերքը հասցնել 14—16 միլիարդ փթի, մսի արտադրությունը՝ 20—25 միլիոն տոննայի, կաթինը՝ 115—135 միլիոն տոննայի։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև գիտության զարգացման բնագավառում։ Սովետական Միության փառապանծ գիտնականները, հերոս տիեզերագնացները աշխարհում առաջինը ուղի հարթեցին տիեզերքի գաղտնիքները յուրացնելու գործում։ Տիեզերքի հետազոտությունների նպատակով շարունակվում է հաջողությամբ իրագործվել երկրի արհեստական մի շարք արբանյակների թռիչքը։

Տիեզերական տարածության յուրացման գործում սովետական մարդիկ կատարեցին նոր, մեծ սխրագործություն։ Աշխարհում առաջին անգամ տիեզերք թռավ անձնակազմ ունեցող սովետական «Վոսխոդ» բազմատեղանոց արբանյականավը։

«Վոսխոդ» արբանյականավը ուղեծիր դուրս բերվեց 1964 թվականի հոկտեմբերի 12-ին և տիեզերքում մեկ



օրվա ընթացքում 16 անգամ պտույտ գործեց երկրագնդի շուրջը, անցնելով մոտ 700 հազար կիլոմետր տարածություն։ Ընդամին, նավի սարքավորումներն ու ապարատները ամբողջ թռիչքի ընթացքում գործում էին անխափան, տիեզերագնացների համար ապահովելով նավի կառավարման, գիտական դիտարկումների և Երկիր վերադառնալու անհրաժեշտ պայմաններ։

Բացառիկ հաջողությամբ ավարտելով պատմական ուղևորությունը, ընկերներ Կոմարովից, Ֆեոկտիստովից և Եգորովից բաղկացած սովետական տիեզերագնացների հերոսական անձնակազմը նոր դարագլուխ բացեց տիեզերական տարածության յուրացման ասպարեզում։ Առաջին անգամ մի նավով տիեզերական թռիչք կատարեց մի կոլեկտիվ, որն ընդունակ է տևական ժամանակամիջոցում նավը սարքերով կառավարելու հետ մեկտեղ համատեղ գիտական աշխատանք կատարելու տիեզերագնացության, կենսաբանության և այլ գիտությունների բնագավառում։ Այդ թռիչքը դարձյալ ցուցադրեց սովետական տիեզերական տեխնիկայի՝ հզոր հրթիռների, բարդ տիեզերանավերի և մարդու տիեզերական թռիչքների համար անհրաժեշտ ամբողջ սարքավորման բարձր հատկություններն ու կատարելությունը։

Տիեզերքի նվաճման ասպարեզում ձեռք բերված նոր, մեծ հաղթանակը էլ ավելի է բարձրացնում մեր սոցիալիստական հայրենիքի փառքը և վառ կերպով ամբողջ աշխարհին ցուցադրում, թե ինչպիսի չտեսնված սխրանքների է ընդունակ դասակարգային ու ազգային կեղեքումից ազատագրված սովետական ժողովուրդը, թե նրա մեջ ինչպիսի վիթխարի ուժեր ու տաղանդներ է ծնել ռևոլյուցիոն եռանդը։

Աշխարհում առաջինը մեզ մոտ ստեղծվեցին միջուկային էներգետիկ կայանքներ, որտեղ ջերմային էներգիան անմիջականորեն էլեկտրականի է փոխարկվում կիսահաղորդիչների օգնությամբ։ Ընթացիկ տարում Բելոյարսկի Ի. Վ. Կուրչատովի անվան ատոմային էլեկտրակայանում կատարվեց 100 հազար կիլովատ հզորությամբ առաջին ռեակտորի գործարկումը, ավարտվեց Նովո-Վորոնեժսկի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթի շինարարությունը։ 1964 թվականի վերջին սովետական ատոմային էլեկտրակայանների հզորությունը կկազմի ավելի քան 900 հազար կիլովատ։

Աննախընթաց հաջողություններ են ձեռք բերվել կուլտուրայի, ժողովրդական կրթության, գրականության և արվեստի զարգացման ասպարեզում։ Մեր երկրում կա ավելի քան 220 հազար դպրոց, 742 բուհ, 8 հազար միջնակարգ մասնագիտական և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատություններ։ Այժմ մեր երկրում ուսուցման այդ բոլոր ձևերում սովորում են ավելի քան 65 միլիոն մարդ։ Երկրում իրագործվում է ձրի ուսուցումը, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ու բուհերի 5,5 միլիոն ուսանողներ թոշակ են ստանում և ապահովված են հանրակացարանով։ Գիշերօթիկ, երկարօրյա դպրոցներում և խմբերում ընդգրկված են ավելի քան 2,4 միլիոն աշակերտներ։ Երկրում գնալով ավելի է ընդարձակվում բարձրագույն ուսումնական հաստատությունների ցանցը։ Միայն ընթացիկ տարում բուհերը ավարտեցին 350 հազար մասնագետներ, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ 550 հազար։ Երկրում ստեղծվել են 95 նոր բուհեր։ Այժմ մեզ մոտ ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են 2 անգամ ավելի շատ ինժեներներ, քան ԱՄՆ-ում։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատող 107 միլիոն բնակչության 68,6 միլիոնն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Բուռն վերելք է ապրում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ 1962 թվականին երկրում հաշվվում էր 495 պրոֆեսիոնալ թատրոն՝ 2,8 անգամ շատ, քան 1913 թվականին։ Այժմ ՍՍՌՄ-ում գործում են 130 հազար ակումբներ։ Ընթացիկ տարվա միայն առաջին կիսամյակում կինոսարքերի թիվը երկրում ավելացավ 3 հազարով և հուլիսի մեկի դրությամբ կազմեց 134 հազար։ Մասսայական գրադարանների թիվը մեր երկրում, մինչռևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է 10 անգամ, իսկ գրքային ֆոնդը՝ ավելի քան 100 անգամ։ Ավելի ու ավելի մեծ զարգացում են ստանում կուլտուրայի ժողովրդական համալսարանները, որոնց թիվը 1964 թվականի մարտի մեկի դրությամբ կազմում էր 9.625։ Ժողովրդական համալսարաններում սովորում են ավելի քան 2 միլիոն ունկնդիր։ 1963 թվականին ՍՍՌՄ-ում հրատարակվել է 3.912 ամսագիր և պարբե-



րական հրատարակություն։ Յուրաքանչյուր տարի ամեն մի բնակչին մեր երկրում բաց է թողնվում 9 անգամ ավելի շատ գիրք, քան մինչռևոլյուցիոն Ռուսաստանում։ Ամբողջ աշխարհում հրատարակվող գրքերի քառորդ մասը հրատարակվում է ՍՍՌՄ-ում։

Մեր երկրում մեծ տարածում են գտել ռադիոն, հեռուստացույցը։ Վերջին մի քանի տարվա ընթացքում ՍՍՌՄ աշխատավորները ձեռք են բերել 25 միլիոն ռադիոընդունիչ։ Բնակչությունն օգտվում է 35 միլիոն ռադիոտրանսլյացիոն կետերից։ Երկրում կա 150 հեռուստացուցային կենտրոն, որի տրանսլյացիոն ցանցն ընդգրկում է 90 միլիոն բնակչությամբ տերիտորիա։ Նախատեսված է 1965 թվականին այն հասցնել 170 կենտրոնի՝ ընդգրկելով 100 միլիոն բնակչությամբ տերիտորիա։

Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը վիթխարի աշխատանք են կատարել ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Տարեցտարի աճում է երկրի ազգային եկամուտը։ ՍՍՌՄ-ում ազգային եկամտի $^{3}/_{4}$-ը գնում է բնակչության նյութական և կուլտուրական անձնական պահանջմունքների բավարարման համար։ Բանվորների ռեալ եկամուտները, մինչռևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ, 1963 թվականին ավելացան 4,5 անգամ, իսկ եթե հաշվենք բանվորներին բոլոր արտոնություններից, սպառման հանրային ֆոնդերից վճարումները, ապա ռեալ աշխատավարձը փաստորեն մեկ աշխատողի հաշվով բարձրացել է, 1913 թվականի համեմատությամբ, 25 անգամ, իսկ աշխատող գյուղացու հաշվով՝ 40 անգամ։ Սպառման հանրային ֆոնդերը 1963 թվականին կազմեցին 34,5 միլիարդ ռուբլի։ Սպառման հանրային ֆոնդերի հաշվին ապահովվում են ձրի ուսուցումը և ձրի բուժսպասարկումը։ Այժմ ավելի քան 26 միլիոն մարդ ստանում է կենսաթոշակ, 5,5 միլիոն սովորողներ ստանում են թոշակ կամ ձրի օգտվում են հանրակացարաններից, ավելի քան 12 միլիոն մարդ տարեկան հանգստանում և բուժվում են սանատորիաներում, հանգստյան տներում և պիոներական ճամբարներում։ Ավելի քան 10 միլիոն երեխաներ ընդգրկված են մանկապարտեզներում և մանկամսուրներում, 3 անգամ շատ, քան 1958 թվականին, 6 միլիոն բազմազավակ և միայնակ մայրեր ստանում են պետական

նպաստ։ Միայն 1964 թվականի առաջին կիսամյակում երկրի բնակչությունը սպառման հանրային ֆոնդերից ստացել է 17,8 միլիարդ ռուբլի կամ 1 միլիարդ ռուբլով ավելի, քան անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանում։

Երկրում ուժեղ թափով ծավալված է բնակարանային շինարարությունը, որով Սովետական Միությունը առաջին տեղն է գրավում աշխարհում։ 1963 թվականին ՍՍՌՄ-ում կառուցվեց 2,4 միլիոն բնակարան, այդ ավելին է, քան ԱՄՆ-ի, Անգլիայի, ԳՖՌ-ի կառուցածը միասին վերցրած։

Ընթացիկ տարվա հուլիս ամսին կայացած ՍՍՌՄ Գերագույն սովետի 4-րդ սեսիայի որոշումները պարզ վկայությունն են այն բանի, որ մարդու նկատմամբ հոգատարությունը մեր հասարակության բարձրագույն օրենքն է։ Համաձայն սեսիայում ընդունած օրենքի կենսաթոշակավորվելու են կոլտնտեսությունների աշխատողները, բարձրանալու է մի շարք կատեգորիաների աշխատողների աշխատավարձը։ Համաձայն օրենքի 6,5 միլիոն կոլտնտեսականներ ստանալու են կենսաթոշակ, որը հանդիսանում է մեր պարտիայի կողմից գյուղաշխատավորների նկատմամբ ցուցաբերվող հոգատարության վառ դրսևորումը։ Մեր երկրում միշտ էլ պարտիան և ժողովուրդը բարձր են գնահատել ժողովրդական ուսուցչի և բժշկի շնորհակալ ու պատվավոր աշխատանքը։ Նոր օրենքի համաձայն ընթացիկ տարվա նոյեմբեր ամսից աշխատավարձի ավելի բարելավված պայմանների են փոխադրվելու 4 միլիոն 800 հազար ուսուցիչներ և լուսավորության աշխատողներ։ Սովետների երկրում ամենուրեք մեծ հոգատարություն է ցուցաբերվում մարդու առողջության պահպանության նկատմամբ։ Միայն վերջին տարիներին հիվանդանոցային մահճակալների թիվը երկրում ավելացել է 900 հազարով և այժմ կազմում է ավելի քան 2 միլիոն։ Մեր երկրում հաշվվում է 2,1 հազար սանատորիա, 888 հանգստյան տուն, որոնք ամեն տարի անվճար կամ արտոնյալ կարգով կազմակերպում են 6 միլիոն աշխատավորների հանգիստը։ Երկրում աշխատում են 500 հազար բժիշկներ, որ ամբողջ աշխարհում եղած բժիշկների 25 տոկոսն է կազմում։ Նոր օրենքով նախատեսված է մինչև 23 տոկոսով բարձրացնել բժիշկների և առողջա-



պահության մյուս աշխատողների աշխատավարձը։ Բացի դրանից ուսուցիչները, բժիշկները և լուսավորության ու առողջապահության բնագավառի մյուս աշխատողները ապահովվում են երկարամյա ծառայության և ծերության կենսաթոշակներով, ինչպես նաև նպաստներով։ Օրենքի համաձայն բարձրանում է նաև առևտրի ու հասարակական սննդի աշխատողների աշխատավարձը 15—25 տոկոսով։ Բարձրանալու է նաև կոմունալ-բնակարանային տնտեսության և կենցաղային սպասարկման աշխատողների, տեղական պետական ապարատի և մի քանի այլ բնագավառների աշխատողների աշխատավարձը։ Աշխատանքի վարձատրության նոր պայմանների կփոխադրվեն ավելի քան 18 միլիոն մարդ։ Սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացումն արտահայտվում է բնակչության արագ աճի մեջ. 1964 թվականի հուլիսի մեկի տվյալներով մեր երկրի բնակչությունը հասավ 228 միլիոնի։

Կապիտալիստական և ոչ մի երկրում խոսք չի կարող լինել անվճար ուսուցման կամ բուժսպասարկման մասին։ Միայն բուժման համար ԱՄՆ-ի բնակչության անձնական ծախսերը 1962 թվականին կազմեցին 19,7 միլիարդ դոլար։ Ոչ լրիվ պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ում գործազուրկների թիվը հաշվվում է 4 միլիոն մարդ։ Պրեզիդենտ Ջոնսոնի խոստովանությամբ ԱՄՆ-ի բնակչության հինգերորդ մասը տառապում է աղքատությունից։ Անգլիայում մի քանի տարի առաջ մտցվեց կենսաթոշակավորում, որը և արժանացավ բուրժուական մամուլի գովասանքին։ Սակայն դա ծաղրանք է աշխատավորների պահանջների նկատմամբ։ Այնտեղ ստեղծված է սոցիալական ապահովության ֆոնդ, որտեղ բանվորների շաբաթական աշխատավարձի 4,5 տոկոսը վերցվում է և նրանց է վերադարձվում կենսաթոշակի ու նպաստի անվան տակ, իսկ ՍՍՌՄ-ում միայն 1964 թվականին սոցիալական ապահովության համար պետական ծախսերը նախատեսված են 12,7 միլիարդ ռուբլի, կամ պետական բյուջեի 14 տոկոսը։ Կոլտնտեսականներին կենսաթոշակավորելուց հետո մեր երկրում կենսաթոշակ ստացողների թիվը կկազմի 30 միլիոն մարդ։

Մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձը աննախընթաց հաջողություններով են դիմավորում նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Ռեսպուբլիկայում միայն յոթնամյակի անցած հինգ ու կես տարում կառուցվել և

գործարկվել են 215 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և խոշոր արտադրամասեր։ Այժմ 57 երկրներ ավելի քան 100 անուն ապրանք են ստանում Հայաստանից։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի պլանը կատարվեց 104 տոկոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ քիմիական արդյունաբերության արտադրանքը աճեց 35 տոկոսով, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը՝ 12 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 6 տոկոսով և այլն։

Նշանակալից հաջողություններ են ձեռք բերել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Անցյալ տարվա համեմատությամբ, ընթացիկ տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում հացահատիկային կուլտուրաների ցանքը ավելացավ 8.141 հեկտարով, գցվել են 1.368 հեկտար պտղատու և 222 հեկտար խաղողի նոր այգիներ։

Այդ նույն ժամանակաշրջանում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 2,3 տոկոսով, խոզերինը՝ 23,7 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 5,7 տոկոսով։

Պարտիայի և կառավարության հոգատարության շնորհիվ սիստեմատիկաբար բարձրանում է աշխատավորության նյութական բարեկեցությունը։ Պետական և կոոպերատիվ ներդրումների հաշվին առաջին կիսամյակում շահագործման է հանձնվել 230 հազար քմ բնակելի տարածություն կամ 5.000 նոր բնակարան։ 7-ամյակի հինգ ու կես տարում 200 հազար ընտանիքներ նոր բնակարան են ստացել, այսինքն կառուցվել են այնքան բնակելի շենքեր, որքան կազմում է սովետական իշխանության 39 տարիներին կառուցված բնակարանային ֆոնդը։ Ընթացիկ տարում կառուցվել է 450 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն։

Մեր հայրենիքը մեծ հոգատարություն է ցուցաբերում հայերի հայրենադարձության նկատմամբ։ Այս տարի արդեն Իրանից, Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայից, Կիպրոսից և այլ երկրներից հայրենիք են վերադարձել բազմաթիվ ընտանիքներ։ Հայրենադարձներն ստանում են աշխատանք, բնակարան, կենսաթոշակ։ Նրանք ապահովված են այն բոլոր արտոնություններով, ինչ վայելում են սովետական քաղաքացիները։



Արագընթաց տեմպերով են զարգանում մեր ռեսպուբլիկայի գիտությունը, ժողովրդական կրթությունը և կուլտուրան։

Պատմական կարճ ժամանակաշրջանում ՍՍՌՄ-ում ձեռք բերած մեծագույն հաջողությունների մեջ կարևորագույն դերը պատկանում է մեր բազմազգ ժողովուրդների անխախտ բարեկամությանը և եղբայրական համագործակցությանը, որը մեր հասարակության շարժիչ ուժն է և բխում է սոցիալիստական հասարակարգի բնույթից։ Դրա վառ վկայությունն է այն, որ Սովետական Միությունն իր գոյության ընթացքում լուրջ փորձությունների է ենթարկվել և միշտ պատվով է դուրս եկել այդ փորձություններից, որովհետև միշտ անսասան է մնացել ժողովուրդների բարեկամությունը։ Մեծ փորձություն էր Հայրենական մեծ պատերազմը։ Այն ժամանակ մի շարք ռեսպուբլիկաների տերիտորիաներ լրիվ, իսկ որոշ ռեսպուբլիկաների տերիտորիաներ էլ մասամբ օկուպացվեցին հիտլերականների կողմից, սակայն ոչ մի ռեսպուբլիկայի տերիտորիայում թշնամուն չհաջողվեց ստեղծել որևէ մարիոնետային պետություն, ինչպես նրանք այդ անում էին Եվրոպայի մյուս երկրներում։

Ժողովուրդների բարեկամության պայմաններում է, նրանց փոխադարձ օգնության, համագործակցության շնորհիվ է, որ կարճ ժամանակաշրջանում մեր երկրի ժողովուրդները հասան մեծ հաղթանակի և տնտեսական խոշոր հաջողությունների։

Սովետական Միության կոմունիստական պարտիան ստեղծեց ժողովուրդների փաստական իրավահավասարություն և ապահովեց նրա անշեղ զարգացումը։

Մեր երկրի բազմազգ ժողովուրդների բարեկամության տնտեսական հիմքը սոցիալիստական արտադրահարաբերություններն են։ Միայն այդպիսի պայմաններում այժմ Սովետական Ուկրաինան ավելի շատ չուգուն է ձուլում, քան Եվրոպայի որևէ երկիր։ Բնակչության մեկ շնչի հաշվով Ուկրաինայում ավելի շատ ածուխ է արդյունահանվում, քան ԱՄՆ-ում և Ֆրանսիայում։ Վրաստանը ավելի շատ պողպատ է ձուլում, քան Շվեյցարիան, Նորվեգիան և Թուրքիան միասին վերցրած և 3,5 անգամ ավելի շատ հաստոցներ է արտադրում, քան նախառևոլյուցիոն Ռուսաստանը։ Չտեսնված հաջողու-

թյուններ ձեռք բերեցին Միջին Ասիայի և Ղազախստանի ժողովուրդները։ Եթե 1913 թվականի համեմատությամբ 1961 թվականին ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացավ 13 անգամ, ապա Կիրգիզիայում՝ 70 անգամ, իսկ այժմ Ղազախստանի արդյունաբերության ծավալը մեծացել է 78 անգամ և 7,5 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան ամբողջ ցարական Ռուսաստանը։ Եթե Տաջիկստանը մինչև ռևոլյուցիան ուներ 10 դպրոց և 13 ուսուցիչ, այժմ ունի 28 հազար ուսուցիչ, մեկ հիվանդանոցի փոխարեն՝ 252 հիվանդանոց, 3.000 բժիշկ և այլն։ Կարճ ժամանակամիջոց է, որ սովետական կարգեր են հաստատված Մերձբալթյան ռեսպուբլիկաներում, սակայն հաջողությունները ապշեցուցիչ են։ Ահա Սովետական Էստոնիայի օրինակը, որը վերջերս տոնեց սովետական իշխանության հաստատման 24-րդ տարեդարձը։ Եթե առաջ արդյունաբերության հիմնական ճյուղը թեթև և սննդի արդյունաբերությունն էր, ապա 1963 թվականին Սովետական Էստոնիայի արդյունաբերության համախառն արտադրանքի 55 տոկոսը կազմեց ծանր արդյունաբերությունը։

Այս տարի մեր երկրի ժողովուրդները տոնեցին Ռուսաստանի կազմում Ադրբեջանի միավորման 150-ամյակը։ Լավ երևույթ է դարձել տնտեսական, կուլտուրական փորձի փոխանակումը տարբեր ռեսպուբլիկաների և ժողովուրդների միջև։ Այս տարվա հունիսին Էստոնիայում հայկական արվեստի շաբաթի և սեպտեմբերին Հայաստանում էստոնական արվեստի շաբաթի անցկացումը, հայ և ադրբեջանական թատրոնների փոխադարձ ներկայացումների միամսյակը հանդիսացան ժողովուրդների լենինյան բարեկամության դրսևորման վառ օրինակ։

Մեծ Հոկտեմբերի փառապանծ տոնը սոցիալիզմի կառուցման գործում նորանոր նվաճումներով են դիմավորում եղբայրական սոցիալիստական երկրները, որոնց ժողովուրդները մեկընդմիշտ իրենց բախտը կապել են կոմունիստական և բանվորական պարտիաների հետ, նրանց մեջ տեսնելով իրենց կենսական շահերի արտահայտչին ու պաշտպանին։

Արտադրողական ուժերի արագ աճ, սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացում՝ ահա սոցիալիստական երկրների տնտեսական զարգացման



վճռական տենդենցը։ Սոցիալիստական երկրների մեծ մասին մոտավորապես քառորդ դար է բաժանում մինչպատերազմյան կապիտալիստական մակարդակից։ Սակայն այդքան կարճ ժամանակամիջոցում սոցիալիստական երկրները ձեռք են բերել վիթխարի հաջողություններ ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառում։

Սոցիալիզմի համաշխարհային լագերը այժմ գրավում է աշխարհի տերիտորիայի 26 տոկոսը, որտեղ բնակվում է ամբողջ բնակչության 35,6 տոկոսը։ Սոցիալիստական երկրներին այժմ բաժին է ընկնում ամբողջ համաշխարհային արդյունաբերության 38 տոկոսը, որը 1917 թվականին հազիվ կազմում էր 3 տոկոս։

Սոցիալիստական երկրներում անշեղորեն զարգանում է ինդուստրիան։ Մինչպատերազմյան մակարդակի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքն ավելացել է Բուլղարիայում՝ 15, Լեհաստանում և Ռումինիայում՝ 8, Չեխոսլովակիայում և ԳԴՌ-ում՝ 5,5 անգամ և այլն։ Հետաքրքրական է նշել այն, որ 1950—1962 թթ. ընթացքում միայն Եվրոպայի սոցիալիստական երկրներն ամբողջությամբ վերցրած արդյունաբերական արտադրությունն ավելացրել են 3,6 անգամ, իսկ կապիտալիստական երկրները՝ 1,8 անգամ։

Զարգանում է նաև սոցիալիստական երկրների գյուղատնտեսությունը։ 1961—1962 թթ. ընթացքում ավարտվեց գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացումը Ռումինիայում և Հունգարիայում։ Սոցիալիստական բոլոր երկրներում ավարտված է սոցիալիզմի կառուցման ամենադժվար խնդիրներից մեկը՝ ստեղծվել է սոցիալիստական գյուղատնտեսական արտադրություն։ Այդ արտադրությունն ամրապնդելու համար հատկացվում են հսկայական կապիտալ ներդրումներ, մեծ չափով ավելացվում է գյուղատնտեսական մեքենաների թիվը։

Բոլոր սոցիալիստական երկրներում անց են կացվում այնպիսի միջոցառումներ, որոնց նպատակն է ավելացնել ժողովրդական սպառումը, էլ ավելի բարձրացնել բնակչության կենսամակարդակը։

Ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար՝ այսպիսին է սոցիալիստական հասարակության ամենաբարձր սկզբունքը։ Սոցիալիստական կարգերի հաղթանակը մարդուն ազատեց շահագործու-

մից, սովից ու անգրագիտության խավարից։ Սոցիալիստական բոլոր երկրներում յուրաքանչյուր 5-րդ մարդը սովորում է։ Իսպառ վերացված է անգրագիտությունը։ Լայն թափով զարգանում է բնակարանային շինարարությունը։ 1958—1964 թթ. ԳԴՌ-ում կառուցվել է 700 հազար բնակարան, հետպատերազմյան երկու տասնամյակում Ռումինիայում կառուցվել է 2 միլիոն բնակարան, միայն վերջին երկու տարիներին Հունգարիայում կառուցվել է մոտ 150 հազար բնակարան, իսկ 1963 թվականին Չեխոսլովակիայում կառուցվել է մոտ 90 հազար, Կորեական Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում՝ 180 հազար բնակարան։

Բնակչության բուժսպասարկման ուղղությամբ Լեհաստանը, Չեխոսլովակիան և ԳԴՌ-ն առաջ են անցել Անգլիայից, Ֆրանսիայից և Արևմտյան Գերմանիայից։ Բուլղարիան, Ռումինիան և Հունգարիան առաջ են անցել Թուրքիայից, Հունաստանից, Իտալիայից։ ԿԺԴՌ-ն առաջ է անցել Հարավային Կորեայից, ՎԴՌ-ն՝ Հարավային Վիետնամից, Կուբան՝ լատինաամերիկյան երկրների մեծ մասից, Հարավսլավիան՝ Իտալիայից։

Սոցիալիստական երկրների համագործակցության ամրապնդման կարևոր միջոց է հանդիսանում Տնտեսական փոխօգնության խորհուրդը (ՏՓԽ), որը նշանակալի աշխատանքներ է տանում համագործակցության մասնակից երկրների ժողովրդական տնտեսության պլանների կոորդինացման, նրանց տնտեսությունն ուսումնասիրելու և այլ ուղղությամբ։

Բուլղարիան, Հունգարիան, ԳԴՌ-ն, Լեհաստանը, Ռումինիան, ՍՍՌՄ-ը, Չեխոսլովակիան, փոխադարձաբեն միմյանց մատակարարում են քարածուխ, կոքս։ Սոցիալիստական մյուս երկրներին նավթ են մատակարարում ՍՍՌՄ-ը և Ռումինիան։ Հունգարիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Բուլղարիայի մետալուրգիական գործարաններին հումք է մատակարարում ՍՍՌՄ-ը։ Չեխոսլովակիան, ԳԴՌ-ն, Հունգարիան, Ռումինիան և Բուլղարիան համագործակցում են էլեկտրակայանների շահագործման բնագավառում։ «Բարեկամություն» նավթամուղը և նրանից սնվող նավթավերամշակման ձեռնարկությունները տարածված են ՍՍՌՄ-ի, Հունգարիայի, Լեհաստանի, ԳԴՌ-ի, Չեխոսլովակիայի տերիտորիաներում։



Փոխադարձ օգնության սկզբունքներով հիմնված միջազգային այս համագործակցությունը հանդիսանում է սոցիալիստական երկրների տնտեսական զարգացման հզոր գործոնը։

Հողագնդի բոլոր աշխարհամասերում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից սկիզբ առած ազգային-ազատագրական հզոր շարժումներն այսօր դուրս են եկել միջազգային ասպարեզ։ Դեռևս Մարքսն ու Էնգելսը, հենվելով կապիտալիստական հասարակության հակասությունների գիտական վերլուծության վրա, առաջինը կանխագուշակեցին ազգային-ազատագրական շարժման առաջացման անխուսափելիությունը և բնորոշեցին նրա զարգացման ընդհանուր օրինաչափությունները։

Պատմական նոր պայմաններում Վ. Ի. Լենինը ավելի խորացրեց ու զարգացրեց ազգային-ազատագրական շարժման թեորիական հիմունքները, բացահայտեց իմպերիալիզմի դեմ ճնշված ժողովուրդների ու կապիտալիստական երկրների պրոլետարիատի համատեղ պայքարի հսկայական նշանակությունը, ցույց տվեց իմպերիալիզմի ոչնչացման գործում, համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի գործում ազգային-ազատագրական շարժման դերը։

Իրենց ազգային-ազատագրության համար պայքարող ժողովուրդների հարվածների տակ ոչնչացվում է գաղութակալության ամոթալի ռեժիմը, որը գաղութային և կիսագաղութային ժողովուրդներին բռնությամբ պարտադրել էին իմպերիալիստները։

Իմպերիալիստական գիշատիչները, որոնք դարեր շարունակ անասելի թալանի ու շահագործման էին ենթարկում գաղութների բազմամիլիոնանոց ժողովուրդներին, այսօր արդեն կորցրել են իրենց դիրքերը։

Ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և միջազգային բանվորական շարժման հսկայական աջակցության ու օգնության շնորհիվ ձեռք է բերել մեծ հաղթանակներ։

Հետաքրքիր է նշել, որ 1919 թվականին գաղութների և կիսագաղութների տերիտորիան կազմում էր 104,5 միլիոն քառ. կմ կամ երկրագնդի 77,2 տոկոսը, իսկ բնակչությունը՝ մեկ միլիարդ 230 միլիոն մարդ, կամ երկրագնդի բնակչության 69,2 տոկոսը։ Այսօր արդեն իմպերիալիզմի գաղութային տիրապետության տակ է

գտնվում երկրագնդի բնակչության 1,3 տոկոսը կամ 40,2 միլիոն մարդ։ Այժմ գաղութների տերիտորիան կազմում է 6,9 միլիոն քառ. կմ կամ երկրագնդի 5,2 տոկոսը։ Հեռու չէ այն ժամը, երբ այդ մնացած գաղութների ժողովուրդների ազգային անկախության համար մղվող պայքարը ևս կպսակվի հաղթանակով։

Ներկայումս միջազգային ասպարեզ են դուրս եկել ավելի քան 60 երիտասարդ ազգային պետություններ, որոնցից 37-ը անկախություն են ստացել կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապում։ Միայն 1960 թվականին անկախություն ստացան աֆրիկյան 17 պետություններ։

Երկու սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում երիտասարդ պետությունների ժողովուրդները հասել են նշանակալի հաջողությունների նաև սոցիալական ազատագրության համար մղվող պայքարում։ Կուբայում ազգային-ազատագրական ռևոլյուցիան վերաճեց սոցիալիստականի, ոչնչացվեց մարդու կողմից մարդու շահագործումը։ Մի շարք երկրներում ռևոլյուցիոն զարգացումն ընթանում է ոչ կապիտալիստական ուղիով։ Տասնամյակներ շարունակ գտնվելով կապիտալիստական շահագործման դաժան պայմաններում, նրանք շատ լավ հասկացել են, որ իրենց փրկության միակ ուղին ոչ կապիտալիստական զարգացման ուղին է, սոցիալիզմի ուղին։ Մի շարք երիտասարդ պետություններ այդ ուղիով արդեն շատ առաջ են անցել և հնարավորություն են ստացել ընդհուպ մոտենալու սոցիալիզմի կառուցման խնդիրներին։ Ալժիրի հերոս ժողովուրդը ամրապնդում է իր երկրի քաղաքական և տնտեսական անկախությունը, կառուցում է սոցիալիստական հասարակություն։

Նոր զարգացող երկրներն իրենց առջև խնդիր են դրել ազատագրվել իմպերիալիզմից տնտեսապես։ Այդ գործում նրանց հսկայական օգնություն են ցույց տալիս ՍՍՌՄ-ը, մյուս սոցիալիստական երկրները։ ՍՍՌՄ-ի օգնությամբ ավելի քան 20 ազատագրված երկրներում կառուցվում են մոտ 500 արդյունաբերական ձեռնարկություն և այլ կարևոր օբյեկտներ։ Նրանց թվում են սև և գունավոր մետալուրգիայի 34 ձեռնարկություն և ցեխ, մեքենաշինական և մետաղամշակման 30 գործարան, քիմիական և նավթավերամշակման 20 գործարան, 20 էլեկտրակայան, շինանյութերի արտադրության 20 ձեռնարկություն, 63 ուսումնական հաստատություններ և այլն։ Մյուս սոցիալիստական երկրների օգնությամբ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ազատագրված երկրներում կառուցվում են ավելի քան 400 արդյունաբերական ձեռնարկություններ։ Սոցիալիստական երկրների օգնությամբ նոր զարգացող երկրներում ստեղծվում են ազգային կադրեր։ Միայն ՍՍՌՄ-ում սովորում են ազատագրված երկրներից 12 հազար ուսանողներ։

ՍՍՌՄ-ը, մյուս սոցիալիստական երկրները, բարձր են գնահատում ազգային-ազատագրական շարժումը իբրև իրենց հուսալի դաշնակցի՝ հակաիմպերիալիստական պայքարում։

Ժամանակակից աշխարհում, որտեղ գնում է անհաշտ պայքար հակադիր սոցիալական ուժերի՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև, Սովետական Միության կոմունիստական պարտիան օգտագործում է իր հսկայական հեղինակությունը, մեր պետության միջազգային ազդեցությունը հանուն սոցիալական առաջադիմության և խաղաղության շահերի։

Մեծ Լենինի հանճարով ստեղծված մեր սոցիալիստական պետությունը իր առաջին դեկրետով ամբողջ մարդկությանը ազդարարեց, որ Ռուսաստանի բանվորա-գյուղացիական պետությունը, կոմունիստական պարտիան իրենց արտաքին քաղաքականության անկյունաքարն են դարձնում տարբեր սոցիալական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը։

Հավատարիմ մեծ Լենինի պատգամներին, սովետական պետությունը անշեղորեն վարում է խաղաղ գոյակցության քաղաքականություն։ Այժմ, երբ ժամանակակից աշխարհում ուժերի փոխհարաբերությունը փոխվել է հօգուտ սոցիալիզմի, ավելի է հզորացել սոցիալիզմի ճամբարը, ստեղծվել են ռեալ հնարավորություններ ջերմամիջուկային պատերազմները իսպառ վերացնելու համար։ Մեր պետության ջանքերով 1963 թվականին ստորագրվեց պայմանագիր միջուկային զենքի փորձարկումները մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ և ջրի տակ արգելելու վերաբերյալ, պայմանագիր, որին միացավ աշխարհի պետությունների ու ժողովուրդների մեծագույն մասը։ Այդ պայմանագրի կնքումով

ամբողջ մարդկության առջև նոր ուժով դրսևորվեց Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների վճռական դերը խաղաղության պաշտպանման, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը կանխելու համար մղվող պայքարում։

Սովետական Միությունը, մյուս սոցիալիստական երկրները հավատարիմ լենինյան սկզբունքներին, ավելի են ակտիվացնում պայքարը հանուն ժողովուրդների խաղաղության, հանուն ջերմամիջուկային պատերազմի արգելման։

Այս տարի սեպտեմբերի 28-ին լրացավ բանվոր դասակարգի առաջին ռևոլյուցիոն-մարքսիստական կազմակերպության՝ Առաջին ինտերնացիոնալի հիմնադրման 100 տարին։ Այդ պատմական շատ կարճ ժամանակամիջոցում աշխարհում տեղի են ունեցել հսկայական որակական փոփոխություններ։ Անցած 100 տարիների ընթացքում Մարքսի և Էնգելսի կողմից ստեղծված կոմունիստական շարժումը այսօր դարձել է աշխարհի առաջընթացի համար պայքարող ամենախոշոր ուժը, ծնունդ է առել միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման զավակը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։

Կոմունիստական և բանվորական շարժումը վեր է ածվել արդիականության ամենաազդեցիկ հզոր ուժի։ Եթե Առաջին ինտերնացիոնալի հիմնադրմանը մասնակցել են ընդամենը չորս երկրների ներկայացուցիչներ, ապա այժմ կոմունիստական ու բանվորական պարտիաներ կան ու գործում են ավելի քան 90 երկրներում։ Առաջին ինտերնացիոնալն իր շարքերում հաշվում էր մի քանի հազար անդամ, իսկ այժմ կոմունիստական ու բանվորական պարտիաների անդամների քանակը կազմում է ավելի քան 42 միլիոն մարդ։ Ներկայիս սերունդը վկա է այն բանին, թե ինչպես է արդի դարաշրջանում տեղի ունենում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթական երթը ամբողջ աշխարհում։

Մարքսիզմ-լենինիզմը բանվոր դասակարգի ինտերնացիոնալ մեծ ուսմունքն է։ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական կոչը կարմիր թելի նման անցնում է գիտական կոմունիզմի զարգացման ուղենիշ դարձած թեորիական բոլոր աշխատությունների



միջով՝ սկսած Մարքսի ու Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստից» մինչև ՍՄԿՊ XXII համագումարի կողմից ընդունված պարտիայի ծրագիրը։ Աշխատավորների արմատական շահերի համար մղվող պայքարում, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի համախմբման գործում կոմունիստական շարժման միասնության նշանակությունը հատկապես մեծ է այսօր։ Կոմունիստական շարժման միասնությունը խախտելու որևէ փորձ, հակաիմպերիալիստական ուժերի քայքայման որևէ փորձ հակասում է մարքսիզմ-լենինիզմին, իմպերիալիզմի դեմ հանուն սոցիալիզմի, խաղաղության համար մղվող պայքարին։

ՍՄԿՊ-ն բարձր է պահում ինտերնացիոնալ համերաշխության մեծ դրոշը և դրանով նա խոր հարգանք, վստահություն ու հեղինակություն է նվաճել ամբողջ աշխարհի կոմունիստների և աշխատավորական լայն զանգվածների շրջանում։

Սովետական Միության կոմունիստական պարտիան ամենայն հաստատակամությամբ պայքարում է ամրապնդելու կոմունիստական շարքերի միասնությունն ու համախմբվածությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների, եղբայրական պարտիաների կողմից կոլեկտիվ կերպով մշակված պատմական փաստաթղթերի՝ 1957 թվականի դեկլարացիայի և 1960 թվականի հայտարարության հիման վրա։ Մեր պարտիան առաջվա պես կվարի բոլոր կոմունիստական պարտիաների միջազգային խորհրդակցություն հրավիրելու ակտիվ գիծ, որպեսզի քննարկվեն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի համար, պրոլետարական ինտերնացիոնալիզմի անսասան սկզբունքների հիման վրա կոմունիստական ու բանվորական շարժման միասնության ամրապնդման համար մղվող պայքարի հրատապ պրոբլեմները։ Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ մարքսիզմ-լենինիզմին հավատարմությունը, օպորտունիզմի բոլոր ձևերի նկատմամբ լենինյան անհաշտությունը, սոցիալիստական համագործակցության երկրների միասնությունն ու եղբայրական համագործակցությունը, համաշխարհային կոմունիստական, բանվորական և ազ-

գային-ազատագրական շարժման համախմբումը համարում են խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի, համայն մարդկության պայծառ ապագայի՝ կոմունիզմի ճանապարհին նվաճվելիք նոր հաղթանակների երաշխիք։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ վիթխարիորեն ընդլայնվում են վերափոխումների մասշտաբները հասարակական արտադրության և կյանքի բոլոր ոլորտներում, բարձրանում են կոմունիստական պարտիայի դերն ու նշանակությունը՝ որպես սովետական հասարակարգի ղեկավարող և ուղղություն տվող ուժի։ Բարձրանում է նրա բոլոր կազմակերպությունների պատասխանատվությունը տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների հաջող կատարման համար։ Էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր բնագավառներում պարտիական ղեկավարության ուժեղացումը մեր ամբողջ մեծ գործի հաջողության հիմքն է։

Պարտիայի միաձույլ միասնությունը, լենինյան պատգամներին նրա անհողդողդ հավատարմությունը նոր ուժով ցուցադրեց ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերի 14-ին կայացած պլենումը։

Մասսաների ստեղծագործական ակտիվությունը միավորելով և ուղղելով միասնական մեծ նպատակին, պարտիան առաջնորդվում է ստույգ կողմնացույցով՝ մարքս-լենինյան կենարար տեսությամբ։ Նա խորապես վերլուծում է տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բարդ պրոցեսները, այդ հիման վրա մշակում է ճիշտ որոշումներ։ Լենինյան պարտիան կոմունիստական շինարարության մեջ սուբյեկտիվիզմի և ինքնահոսի թշնամին է։ Նրան խորթ են պրոժեկտյորությունը, վաղահաս հետևությունները և հապճեպ, ռեալությունից զերծ որոշումներն ու գործողությունները, պարծենկոտությունն ու շաղակրատանքը, վարչարարությամբ տարվելը, գիտության ու պրակտիկ փորձի կողմից արդեն մշակվածը հաշվի առնել չցանկանալը։ Կոմունիզմի կառուցումը կենդանի, ստեղծագործական գործ է, նա չի հանդուրժում գրասենյակային մեթոդներ,



միանձնյա որոշումներ, մասսաների պրակտիկ փորձի անտեսում։

Պարտիայի կյանքն ու գործունեությունը որոշվում են այն սկզբունքներով ու նորմաներով, որոնք մշակել է Վ. Ի. Լենինը, որոնք ստուգվել, հաստատվել և հարստացվել են շատ տասնամյակների պատմական փորձով։ Ղեկավարության կոլեկտիվությունը այդ սկզբունքներից կարևորագույնն է, մեր պարտիայի փորձված զենքը, նրա քաղաքական մեծագույն հարստությունը։

Իրագործելով իր գլխավոր գիծը, պարտիան անհաշտորեն ու հետևողականորեն հանդես է եկել ու հանդես է գալիս մարքսիզմ-լենինիզմին խորթ, մեր սոցիալիստական հասարակարգի բուն էությանը խորթ՝ անհատի պաշտամունքի գաղափարախոսության ու պրակտիկայի դեմ։ Պարտիան իր ամբողջ գործունեության մեջ հենվում է պարտիական ու պետական ղեկավարման լենինյան սկզբունքների վրա։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի յուրաքանչյուր տարեդարձ նշանավորվում է կոմունիզմի համաշխարհային պատմական խոշոր հաղթանակներով։

Կոմունիստների ստեղծագործ պարտիայի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը վստահորեն գնում է լենինյան ուղիով։ Իսկ լենինյան ուղին կոմունիզմի շինարարությունն է։ Մեր պարտիան, մեր ժողովուրդը սրա մեջ են տեսնում իրենց երջանկությունը, իրենց պայքարի նպատակը։ Դրա հետ միասին ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակության կառուցումը սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ միսիայի իրագործումն է իր եղբայրների՝ աշխարհի բոլոր երկրների աշխատավորների նկատմամբ։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և նրա պատմական նշանակությունը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիայի խնդիրները. *Երկեր, հ. 26, էջ 53—65, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հ. 27, էջ 279—333, Հայպետհրատ, 1951։*

Բ. Ն. Պոնոմարյով— Պրոլետարական ինտերնացիոնալիզմը մեր դարաշրջանի ռևոլյուցիոն դրոշն է, *զեկուցում Առաջին ինտերնացիոնալի 100_ամյակին նվիրված հանդիսավոր ժողովում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 29-ի համարում։*

ՍՄԿՊ-ի լենինյան անսասան գլխավոր գիծը. *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 18-ի համարում։*

## 2. Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի զավակն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հեռագիր Հայաստանի ռազմառևոլյուցիոն կոմիտեի նախագահին, *Երկեր, հ. 31, էջ 550, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հ. 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1961։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի հանդիսավոր նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թ. մայիսի 7-ի համարում։*



## 3. ՍՄԿՊ XXII համագումարի պատմական նշանակությունը

(ՍՄԿՊ XXII համագումարի բացման 3-րդ տարեդարձի առթիվ)

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ ծրագիրը (ընդունված ՍՄԿՊ XXII համագումարում), *Հայպետհրատ, 1961։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Շինարարության ղեկավարումը բարելավելու վերաբերյալ ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների կատարման ընթացքի մասին, *զեկուցում ՀԿՊ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 24-ի համարում։*

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 10-ի համարում։*

## 4. Սովետական գիտության նոր հաղթանակը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՏԱՍՍ-ի հաղորդագրությունները «Վոսխոդ» տիեզերանավի թռիչքի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 13—14-ի համարներում։*

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության և Սովետական Միության կառավարության դիմումը Սովետական Միության կոմունիստական պարտիային և ժողովուրդներին, բոլոր երկրների ժողովուրդներին և կառավարություններին, ամբողջ առաջադեմ մարդկությանը. *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 16-ի համարում։*

Մոսկվան գրկում է հերոսներին, *նյութեր «Վոսխոդ» նավի առաջին տիեզերական անձնակազմին Մոսկվայում դիմավորելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 20-ի համարում։*

## 5. Աշխատանքային հաջողություններով նշանավորենք մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Դեպի մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձը. *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբեր ամսվա համարներում։*

Օրինակելիորեն անցկացնել բամբակի բերքահավաքը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 4-ի առաջնորդողը։*

Արագ և անկորուստ հավաքել շաքարի ճակնդեղը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 11-ի առաջնորդողը։*

Փետրվարյան պլենումի որոշումները գործողության մեջ, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 11-ի համարում։*

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ԲԱՑՎԱԾ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի
1965 թվականի
բաժանորդագրությունը.
1 ամիսը — 15 կոպեկ
6 ամիսը — 90 կոպեկ
12 ամիսը — 1 ռուբ. 80 կոպեկ
«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 20
## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 10588* *Պատվեր 1027* *Տիրաժ 8938*

*Հանձնված է արտադրության 17/X 1964 թ.։*
*Ստորագրված է տպագրության 22/X 1964 թ.։*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,*

*Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*